Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 14 ՀՈՒԼԻՍ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 3—52—78:





# ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՌԱՋԻՆ ՏԱՐՎԱ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

Ուղեցույց ունենալով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումները, մեր երկրի գյուղատնտեսության աշխատողներն ընթացիկ տարում զգալիորեն ավելացրին ցանքատարածությունները և ագրոնոմիական լայն միջոցառումներ իրականացրին բերքատվության բարձրացման համար: Բավական է ասել, որ այնպիսի արժեքավոր կուլտուրայի, ինչպիսին է ցորենը, ցանքատարածությունը ամբողջ երկրում, 1953 թվականի համեմատությամբ, 1956 թվականին ընդարձակվեց 14,5 միլիոն հեկտարով: Մեծ չափով ընդարձակվել են նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների ցանքատարածությունները, որոնցից սպասվում է առատ բերք:

Այժմ գլխավոր խնդիրն այն է, որ ժամանակին ու առանց կորստի հավաքել բերքը և դրանով իսկ զգալիորեն ավելացնել երկրի



պարենային ու հումքային ռեսուրսները։ Ամբողջ գյուղատնտեսության արտադրության հիմքը հացահատիկային տնտեսությունն է։ Առանց լավ զարգացած հացահատիկային տնտեսության առկայության չի կարելի բարձրացնել անասնաբուծությունը, չի կարելի ավելացնել տեխնիկական կուլտուրաների արտադրությունը։ Ահա թե ինչու կոլտնտեսությունները, ՄՏ կայանները, գյուղատնտեսության ֆրոնտի մեր բոլոր աշխատողները պետք է բերքահավաքի նախապատրաստման այս եռուն շրջանում թանգ գնահատեն յուրաքանչյուր ժամ, յուրաքանչյուր օր, անեն այն ամենը, ինչ անհրաժեշտ է բերքը արագ և անկորուստ հավաքելու, հարազատ պետության նկատմամբ ունեցած պարտավորությունները պատվով կատարելու համար։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու ՄՏ կայանները այս տարի անհամեմատ ավելի լավ են նախապատրաստվում բերքահավաքին։ Շրջանային պարտիական, սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգաններն ու կոլտնտեսությունների վարչությունները առանձնակի ուշադրություն են դարձնում աշխատանքի ճիշտ կազմակերպման վրա։ Առաջավոր



շատ կոլտնտեսություններում ու ՄՏ կայաններում դաշտավարական ու տրակտորային բրիգադները լրիվ կոմպլեկտավորված են աշխատող ձեռքերով, ապահովված է նրանց համագործակցված աշխատանքը, որը կարևոր միջոց է բերքահավաքի ընթացքում արտադրական միջոցները առավելագույն չափով օգտագործելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։

Բերքահավաքը հաջող անցկացնելու գործում վճռական անելիք ունեն ՄՏ կայանները, որոնք համալրվել են հարյուրավոր նոր մեքենաներով։ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը վերջին ամիսների ընթացքում ստացել և ՄՏ կայաններին է հանձնել 150 նոր կոմբայն։ Այժմ ռեսպուբլիկայի ՄՏ կայանները գրեթե երեք անգամ ավելի շատ կոմբայններ ունեն, քան 1950 թվականին։ Ընթացիկ գյուղատնտեսական տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կոմբայններով բերքահավաք պետք է կատարվի 169 հազար հեկտարի վրա, որը կազմում է հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության մոտ 55 տոկոսը։

Բերքահավաքի ընթացքում գլխավորը՝ կո-

րուստների դեմ տարվող պայքարն է։ Դրա համար էլ անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել բերքահավաքի ժամկետների վրա և ամեն կերպ հասնել այն բանին, որ բերքահավաքն ավարտվի 8—10 օրում։ Չպետք է մոռանալ, որ բերքահավաքի ձգձգման պատճառով գերհասունացած հացահատիկի դաշտերի յուրաքանչյուր հեկտարի վրա առնվազն 2—3 ցենտներ, իսկ երբեմն դրանից ավելի շատ հացահատիկի կորուստ է լինում։

Առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների փորձով ապացուցված է, որ հացահատիկի կորուստը կանխելու, բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու և համախառն բերքը ավելացնելու լավագույն միջոցներից մեկը՝ անջատ բերքահավաքի անցկացումն է։ Ստավրոպոլի երկրամասի կոլտնտեսականների, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների կողմից ՍՍՌ Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ուղղված դիմումի մեջ ասված է, որ «Հացահատիկի անջատ բերքահավաքի դեպքում տեխնիկայի արտադրողականությունն զգալիորեն ավելանում է, բարձրանում է հացահատիկի որակը.



անջատ հնձված հասկից ստացվող հացահատիկը նորմալ խոնավություն ունի, որը կոլտնտեսություններին և սովխոզներին թույլ է տալիս լավագույն ձևով պահպանել հացահատիկը, տնտեսել շատ ուժ, միջոցներ ու ժամանակ և հացահատիկը կոմբայնից հանձնել ուղիղ մթերակայաններ, առանց կալերում կիտելու և զտելու»։

Բերքահավաքի այդ նոր, առաջավոր մեթոդը առաջին անգամ է ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կիրառվելու։ Ուստի պարտիական, սովետական կազմակերպությունները, ՄՏ կայաններն ու կոլտնտեսությունների վարչությունները գործնական միջոցառումներ ձեռք կառնեն բերքահավաքի այդ նոր մեթոդը կիրառելու բոլոր այն կոլտնտեսություններում, որտեղ դրա համար կան անհրաժեշտ պայմաններ ու հնարավորություններ։ Պետք է անջատ բերքահավաքի համար ժամանակին առանձնացվեն հացահատիկի համապատասխան դաշտեր, պատրաստ վիճակում պահվեն հրնձող մեքենաները և բազմակողմանիորեն օգնեն մեխանիզատորներին՝ գործը հաջողությամբ պսակելու համար։

Բերքահավաքի ընթացքում հարկավոր է առանձնակի ուշադրություն դարձնել այն բա-

նի վրա, որպեսզի խզում չառաջանա հնձի, տեղափոխման ու կալսման միջև։ Գործի շահը պահանջում է, որ հնձված բերքը արագ հավաքվի, կալ փոխադրվի ու կալսվի, իսկ կոմբայնների հնձած տարածություններից ծղոտը հավաքվի ու դիզվի, որպեսզի ՄՏ կայանները հնարավորություն ունենան ժամանակին սկսելու աշնանային վարի ու նախացանքային մշակության աշխատանքները։

Անցած գյուղատնտեսական տարում աշխատանքի վատ կազմակերպման հետևանքով շատ կոլտնտեսություններում կալսումը խիստ ձգձգվեց և տեղիք տրվեց հացահատիկի կորստի։ Որպեսզի այս տարի այդ երևույթը չկրկնվի, կոլտնտեսությունների վարչությունները հենց այժմվանից, առանց ժամանակ կորցնելու պետք է խնամքով պատրաստեն կալատեղերը, կարգի բերեն դաշտամիջյան ճանապարհները, հոգ տանեն պահանջվող գյուղատնտեսական գործիքների նորոգման ու պակասի ձեռք բերման մասին։ ՄՏ կայանների աշխատողները առաջիկա օրերում պետք է ավարտեն բոլոր կալսիչների նորոգումը և եղած գրաֆիկի համաձայն կալսիչները տեղափոխեն կալերը։ Կարևորն այն է, որ կոլտնտեսություն-



ները կալսիչներին սպասարկելու համար առանձնացնեն պահանջվող քանակությամբ աշխատող ձեռքեր և մեխանիզատորների հետ միասին ապահովեն կալսիչների անխափան աշխատանքը։

Բերքահավաքը գյուղատնտեսական աշխատանքների ամենալարված, ամենապատասխանատու շրջանն է, որը չի սիրում անկազմակերպվածություն ու թափթփվածություն։ Որպեսզի հացահատիկի հունձը, տեղափոխումը, կալսումը, չորացումն ու ամբարումը արագ ընթանա, որպեսզի աճեցրած բերքը անկորուստ հավաքվի, բոլոր կոլտնտեսականներն ու մեխանիզատորները ակտիվորեն պետք է մասնակցեն բերքահավաքին։

Անհրաժեշտ է բերքահավաքի ընթացքում հատուկ ուշադրություն դարձնել դաշտում աշխատող մեխանիզատորների ու կոլտնտեսականների կուլտ-կենցաղային պայմանների բարելավման վրա, կարգի բերել դաշտային տնակները, գործի դնել շրջիկ կինոներն ու գրադարանները, կազմակերպել գեղարվեստական ինքնագործ խմբակների ելույթներ և այլն։ Գյուղում կատարվող մեր ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը այս օրերին պետք է իսպաս դնել

բերքահավաքը կազմակերպված անցկացնելու գործին։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները թևակոխում են հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի եռուն շրջանը։ Արարատյան դաշտավայրի կոլտնտեսությունները, ինչպես նաև լեռնային գոտու շատ կոլտնտեսություններ արդեն սկսել են մասսայական բերքահավաքը։ Բերքահավաքը շուտով կսկսեն նաև մյուս կոլտնտեսությունները։ Դա գյուղի բոլոր աշխատողներից պահանջում է բարձր կազմակերպվածություն և ուժերի լրիվ լարում։ Պետք է բոլոր միջոցները գործի դնել վեցերորդ հնգամյակի առաջին տարվա բերքահավաքը հաջողությամբ անցկացնելու և հացահատիկի արտադրության ավելացման մասին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումը պատվով կատարելու համար։

Սկսված է Հայաստան-Կիրգիզիա սոցիալիստական մրցությունը։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ջանք չեն խնայի այդ մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։

---

# ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

*Լ. ՆԻԿՈԼԱԵՎ*

Սովետա-հարավսլավական բանակցությունների արդյունքների շուրջը

Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ ընկեր Իոսիպ Բրոզ Տիտոյի և հարավսլավական մյուս ականավոր պետական ու պարտիական գործիչների՝ վերջերս Սովետական Միություն կատարած այցելության ժամանակ բանակցություններ տեղի ունեցան Սովետական և հարավսլավական ղեկավարների միջև։ Այդ բանակցություններն անցան սրտագին և բարեկամական մթնոլորտում, անկեղծության և լիակատար փոխըմբռնման ոգով։ Սովետական և հարավսլավական ղեկավարները կարծիքներ փոխանակեցին միջազգային դրության մասին, քննարկեցին այն հարցը, թե երկու պետությունները հե-

տագայում ինչպես պետք է ամրապնդեն իրենց բարեկամությունը և զարգացնեն փոխադարձ բազմակողմանի համագործակցությունը խաղաղության և սոցիալիզմի շահերին համապատասխան:

Բանակցությունները հնարավորություն տվեցին բացահայտելու երկու կառավարությունների տեսակետների խոշոր նմանությունը միջազգային իրադրության զարգացման և գոյություն ունեցող միջազգային պրոբլեմների գնահատման հարցում, ինչպես նաև ընդհանուր ցանկությունը՝ հետագայում ևս խորացնելու փոխըմբռնումը ու բարեկամությունը Սովետական Միության և Հարավսլավիայի միջև:

Բանակցությունների արդյունքը եղավ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունների համատեղ հայտարարության ստորագրումը: Այդ հայտարարությունը արտացոլում է բանակցությունների մեծ հաջողությունները: Սովետա-հարավսլավական բարեկամությունը շարունակում է ամրապնդվել: Սովետական Միությունը և Ժողովրդական Հարավսլավիան համատեղ, ուս-ուսի տված պայքարելու են խաղաղու-



թյան և սոցիալիզմի համար: Այս է մոսկովյան բանակցությունների գլխավոր արդյունքը:

Հայտարարության մեջ մանրամասն շարադրված են Սովետական Միության և Հարավսլավիայի կառավարությունների հայացքները արդի միջազգային հիմնական պրոբլեմների վերաբերյալ: Պետք է հատկապես ընդգծել, որ այդ հայացքները համընկնում են: Սովետական Միությունը և Հարավսլավիան նորից հաստատեցին միջազգային լարվածության հետագա թուլացման իրենց ջերմ ցանկությունը:

Երկու կառավարությունների գնահատման համաձայն վճռական նշանակություն ունի այն փաստը, որ աճել են ժողովուրդների միջև վստահության ուժեղացմանը նպաստող միջազգային համագործակցությունը ընդլայնելու ջանքերը: Այդ նոր մթնոլորտում ամրապնդվեցին Միավորված Ազգերի Կազմակերպության ուժերն ու ընդունակությունը՝ խնդիրները քննարկելու և հաջողությամբ լուծելու բոլոր երկրների կազմակերպված և իրավահավասար մասնակցությամբ: Երկու կառավարությունները ողջունում են այն, որ Միավորված Ազգերի Կազմակերպությունը լրացվի նոր անդամներով

եվրոպական երկրների, ինչպես նաև Ասիայի և Աֆրիկայի երկրների թվից, որոնց աճող մասնակցությունը միջազգային կյանքում արտահայտվեց դեռևս Բանդունգի կոնֆերանսում:

Սովետական և Հարավսլավական կառավարությունները, սակայն, ափսոսանքով արձանագրեցին, որ դեռ մինչև այժմ չի ճանաչվել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի իրավունքը՝ Միավորված Ազգերի Կազմակերպությունում ներկայացված լինելու համար: Սովետական Միությունը և Հարավսլավիան համառորեն կձգտեն հասնելու այն բանին, որ ճանաչվի այդ մեծ երկրի այդ իրավունքը:

Հայտարարության մեջ մատնանշվում է, որ «սառը պատերազմի» ժամանակ այնքան անվստահություն է կուտակվել, որ դժվար է սպասել բոլոր վիճելի պրոբլեմների արագ և հեշտ կարգավորում: Սակայն նրանցից մի քանիսը կարելի է և պետք է այժմ լուծել: Մասնավորապես, հասունացել են այնպիսի կարևոր հարցի լուծման պայմանները, ինչպիսին է զինաթափումը: Ընդսմին մեծ դեր կարող էր խաղալ զինաթափման վերաբերյալ թեկուզ և մասնակի համաձայնությունը, որն իր հերթին կարող



էր արագացվել զինված ուժերի միակողմանի նվազեցման անցկացումով:

ՀՖԺՌ-ի կառավարությունը ողջունեց ՍՍՌՄ կառավարության վերջերս կայացրած որոշումը սպառազինությունների և զինված ուժերի կրճատման մասին, գտնելով, որ դա հանդիսանում է խոշոր ներդրում ընդհանուր զինաթափման հարցի լուծումը հեշտացնելու գործում:

Սովետական Միությունը և Հարավսլավիան հայտարարեցին, որ ընդհանուր նպատակը պետք է լինի ընդհանրապես ատոմային սպառազինության արգելումը այն հաշվով, որպեսզի ատոմային էներգիան ծառայի մարդկության միայն խաղաղ նպատակներին:

Սովետական և Հարավսլավական կառավարությունները ենթադրում են, որ ժամանակակից իրադրությունը թույլատրում է ավելի վճռական քայլեր ձեռնարկել եվրոպական ժողովուրդների համագործակցության զարգացման ուղղությամբ: Այդ կապակցությամբ կարևոր նշանակություն կարող էին ունենալ համաեվրոպական կոլեկտիվ անվտանգության, պետությունների միջև տնտեսական և կուլտուրական կապերի ուժեղացման վերաբերյալ ավելի լայն

համաձայնագրերը։ Ինչ վերաբերվում է գերմանական հարցին, ապա նրա տերիտորիայում երկու սուվերեն պետություններ գոյություն ունենալու պայմաններում Գերմանիայի վերամիավորմանը հասնելու համար անհրաժեշտ են բանակցություններ՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի միջև։

Սովետա-հարավսլավական հայտարարությունը նախատեսում է նաև այլ միջազգային հարցերի լայն շրջանակ, այն է՝ տեղական կոնֆլիկտների վերացման անհրաժեշտության, խտրականության բոլոր ձևերի վերացմամբ միջազգային առևտրի և տնտեսական համագործակցության զարգացման, կուլտուրական և գիտական փոխանակությունների ասպարեզում կոնտակտների և համագործակցության ուժեղացման, թույլ զարգացած երկրներին՝ առանց ռազմական և քաղաքական որևէ պայմաններ առաջադրելու, օգնություն ցույց տալու հարցերը։ Այս բոլոր հարցերում նույնպես գոյություն ունի երկու կառավարությունների հայացքների միասնություն։ Դա Սովետական Միությանն ու Հարավսլավիային հնարավորություն է տալիս համատեղ ավելի մեծ ա-



վանդ ներդնել խաղաղության ամրապնդման գործում։

Մոսկվայի բանակցությունները խոշոր հաջողություններ ցույց տվեցին երկու սոցիալիստական պետությունների՝ Սովետական Միության և Հարավսլավիայի բազմակողմանի համագործակցության ամրապնդման ուղղությամբ։ Միայն մեկ տարի է անցել այն պահից, երբ Ն. Ս. Խրուշչևի գլխավորած Սովետական կառավարական դելեգացիան այցելեց Հարավսլավիա։ Հարավսլավական ղեկավարների հետ տեղի ունեցած բանակցությունների ընթացքում այն ժամանակ նշվեցին մեր երկու պետությունների միջև փոխհարաբերությունների բարելավման ուղիները։ Այդ կարճ ժամանակամիջոցում մեծ տեղաշարժ է կատարվել սովետա-հարավսլավական հարաբերություններում։ Նրանք ոչ միայն նորմալացվել են, այլև վերականգնվել ու անընդհատ ամրապնդվում է բարեկամությունը Սովետական Միության և Հարավսլավիայի ժողովուրդների միջև։ Սովետա-հարավսլավական փոխհարաբերությունների գլխավոր արդյունքը անցած տարում այն է, որ ընդմիշտ վերջ է տրված երբեմնի օտարացմանը, ամրապնդվում և զարգանում են եղբայրական բարեկամու-

թյունը, սերտ համագործակցությունը մեր երկրների կյանքի բոլոր բնագավառներում։

Սովետական Միության և Հարավսլավիայի փոխհարաբերություններում հաջողվեց արմատական հեղաշրջում կատարել այսքան կարճ ժամանակամիջոցում շնորհիվ այն բանի, որ մեր երկրների միջև կոնֆլիկտի համար հող չկար։ Բարի հարաբերությունների արագ վերականգնման մեջ կարևոր դեր խաղաց այն, որ մեր երկրների ժողովուրդների բարեկամությունը իր արմատներով դարերի խորքն է գնում։ Այդ բարեկամությունը ամրապնդված է երկրորդ համաշխարհային պատերազմում ընդհանուր թշնամու դեմ երկու ժողովուրդների մղած հերոսական պայքարով։ Սովետական Միության և Հարավսլավիայի աշխատավորները ունեն ռևոլյուցիոն փառավոր տրադիցիաներ։ Նրանք դաստիարակվում են ժողովուրդների բարեկամության իդեոլոգիայի ոգով, նրանք առաջնորդվում են մարդկության վառ ապագայի համար պայքարելու ընդհանուր գաղափարներով։

Սովետական Միության և Հարավսլավիայի բարեկամությունը հիմնվում է սոցիալիստական մեծ սկզբունքների վրա, լրիվ իրավահավասարության, յուրաքանչյուր պետու-



թյան սուվերենության հարգման, սոցիալիզմ կառուցող և ամբողջ աշխարհի խաղաղության համար համառորեն պայքարող երկրների փոխադարձ աջակցության վրա։

Մեր երկրները կենսականորեն շահագրգռված են այն բանում, որպեսզի սերտ կերպով համագործակցեն քաղաքական, տնտեսական և կուլտուրական բնագավառներում։

Հարավսլավիայի նկատմամբ Սովետական Միության հարաբերությունները համատեղ պայքարի հավատարիմ եղբոր անկեղծ հարաբերություններ են։

Հարավսլավիայի բարեկամներն են հանդիսանում ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները, որոնք նույնպես, ինչպես և Սովետական Միությունը, ցանկանում են, որպեսզի աճի ու ամրապնդվի Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկան որպես բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն։ Այդ վերաբերմունքը արմատապես հակադիր է որոշ կապիտալիստական երկրների «բարեկամությանը», որոնք ցանկանում էին իրենց նեղ շահերի համար օգտագործել Սովետական Միության և Հարավսլավիայի միջև





ստեղծված կոնֆլիկտը։ Նրանք հույս ունեին, թե այդ կոնֆլիկտի հետևանքով Հարավսլավիան դուրս կգա սոցիալիստական ուղուց և կվերադառնա կապիտալիստական ուղին։

Խաղաղության թշնամիների այդ բոլոր հույսերը կործանվեցին։ Սոցիալիստական երկրները ամրապնդում են իրենց բարեկամությունը՝ նոր հասարակարգի, խաղաղության համար մղվող պայքարում իրենց ուժերի այդ աղբյուրը։

Մոսկվայի բանակցություններում նոր օբյեկտիվ հնարավորություններ հայտնաբերվեցին սովետա-հարավսլավական բարեկամական փոխհարաբերությունների հետագա ամրապնդման համար։ Շարունակվելու է մտքերի կանոնավոր փոխանակություն քաղաքական և այլ հարցերի շուրջը, ընդլայնվելու են տնտեսական և կուլտուրական կապերը, գիտական համագործակցությունը։ Այդ բոլորը սովետա-հարավսլավական բարեկամությունը կդարձնի ավելի կայուն և երկու երկրների համար ավելի օգտակար։

Մոսկվայում սովետա-հարավսլավական միջպետական բանակցությունների հետ միասին տեղի ունեցան զրույցներ պարտիական գծով։ Այդ զրույցների հետևանքով



ստորագրվեց դեկլարացիա Հարավսլավիայի Կոմունիստների միության և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի միջև հարաբերությունների մասին։ Ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի ինտերնացիոնալիստական սկզբունքներով, Հարավսլավիայի Կոմունիստների միության և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի դելեգացիաները համաձայնվեցին այն բանում, որ երկու պարտիաների միջև գոյություն ունեցող կոնտակտները օգտակար են և անհրաժեշտ է դրանք հետագայում ևս շարունակել ու զարգացնել։

Դեկլարացիան վկայում է Սովետական Միության և Հարավսլավիայի Կոմունիստական պարտիաների միասնության մասին։ Այդ միասնությունը հիմնվում է այն բանի վրա, որ յուրաքանչյուր պարտիա կանգնած է ռևոլյուցիոն դիրքերի վրա, ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով, այն կիրառելով ստեղծագործաբար, հաշվի առնելով իր երկրի առանձնահատկությունները։

ՍՄԿՊ և ՀԿՄ համագործակցությունը հիմնըվում է լրիվ կամավորության և իրավահավասարության, բարեկամական քննադատության, վիճելի հարցերի վերաբերյալ կարծիքների ընկերական փոխանակման

վրա։ Նա կծավալվի առաջին հերթին երկու երկրների սոցիալիստական շինարարության ձևերի ու մեթոդների բազմակողմանի փոխադարձ ծանոթացման, սոցիալիստական գիտական մտքի բնագավառում փորձի և կարծիքների ազատ և ընկերական փոխանակման միջոցով։ Կկիրառվեն երկու պարտիաների գործիչների միջև անձնական կոնտակտներ, դելեգացիաների, ինչպես նաև գրականության և այլ նյութերի փոխանակություններ։

Միանգամայն հասկանալի է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Հարավսլավիայի Կոմունիստների Միության համագործակցությունը հնարավորություն կտա անընդհատ ամրապնդել սովետա-հարավսլավական բարեկամությունը, համատեղ աշխատանք տանել միջազգային բանվորական շարժման զարգացման օգտին, սոցիալիզմի օգտին։

Բելգրադի դեկլարացիան, որն ստորագրվեց մեկ տարի առաջ, ամուր հիմք դրեց Սովետական Միության և Հարավսլավիայի բարեկամության վերականգնման համար։ ՍՍՌՄ-ի և ՀՖԺՌ-ի միջև հարաբերությունների նորմալացումը, իսկ այնուհետև բարեկամական հարաբերությունների վերականգ-



նումը դրական մեծ ազդեցություն գործեցին ամբողջ միջազգային դրության առողջացման, Եվրոպայում և ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման վրա։

Մոսկովյան բանակցությունները շարունակեցին և զգալիորեն զարգացրին մեկ տարի առաջ սկսած մեծ գործը։ Բարեկամությունը Սովետական Միության և Հարավսլավիայի միջև էլ ավելի ամրապնդվեց։ Դրանով իսկ նոր մեծ ավանդ մտցվեց խաղաղության համար ժողովուրդների մղած պայքարի մեջ։

Սոցիալիստական երկրների ժողովուրդները, ամբողջ առաջադեմ մարդկությունը ջերմորեն ողջունեցին սովետա-հարավսլավական բանակցությունների արդյունքները։

Մեր ժողովուրդը ամբողջ հոգով ցանկանում է եղբայրական հարավսլավական ժողովրդին նոր հաջողություններ սոցիալիստական շինարարության մեծ գործում։

Սովետական Միությունը ժողովրդական Հարավսլավիայի հետ միասին, բոլոր սոցիալիստական երկրների հետ միասին հաստատակամորեն գնում է կայուն խաղաղության համար, մարդկության լուսավոր ապագայի համար մղվող պայքարի ուղիով։

---

# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ

Ն. ՂԱԶԱՐՅԱՆ

Երևանի էլեկտրաճշգրիտ գործիքների գործարանի ագիտկոլեկտիվը աշխատանքի հարուստ և ուսանելի փորձ ունի։ Աշխատավորների լայն շրջանում կատարվող ագիտացիոն զրույցները ավելի արդյունավետ և ավելի նպատակասլաց դարձնելու նպատակով ագիտկոլեկտիվում պարբերաբար քննության են առնվում առանձին ագիտատորների զրույցներ, կազմակերպվում է նրանց փորձի փոխանակում։ Բացի այդ, ագիտատորներին ցույց է տրվում մեթոդական օգնություն։ Օրինակ, ագիտատորները վերջին երեք ամիսների ընթացքում հատուկ զեկուցում են լսել՝ «Ինչպես մասսայականացնել ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվները արդյունաբերության հետագա զարգացման վերաբերյալ», «Նոր տեխնիկայի կիրառումը, առաջավորների փորձի փոխանակումը գործարանում», «Մեր գործարանի նորարարները» և այլ թեմաների



շուրջ։ Նրանց համար կազմակերպվել են նաև մի շարք դասախոսություններ՝ «Սոցիալիզմի կառուցման ուղիները տարբեր երկրներում», «Արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները», «Արդյունաբերության վերելքը 6-րդ հնգամյակում» և շատ ուրիշ թեմաների մասին։

Ագիտատորներին ցույց տրվող մշտական օգնության շնորհիվ ագիտացիոն զրույցները դարձել են հետաքրքիր ու բովանդակալից։ Ունկնդիրները գովեստով են խոսում իրենց ագիտատորների, ինչպես, օրինակ, Հ. Զրվանդյանի, Հ. Գևորգյանի, Մ. Զալումյանի, Հ. Զամինյանի և ուրիշների մասին։ Նշված ագիտատորների աշխատանքի ուշագրավ կողմն այն է, որ նրանք պարտիայի XX համագումարի նյութերի պարզաբանման հետ միասին իրենց զրույցներում հանգամանորեն խոսում են նաև 6-րդ հնգամյակում գործարանի հեռանկարների, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների հետագա ներդրման ու արմատավորման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, աշխատանքի ռացիոնալ կազմակերպման, ինքնարժեքի իջեցման և այլ արտադրական հարցերի մասին։

Օրերս հավաքող ցեխում բանվորները լսեցին ագիտատոր Հ. Զրվանդյանի զրույցը «Մեր գործարանը 6-րդ հնգամյակում» թեմայով։ Զրույցի սկզբում ագիտատորը հետաքրքիր օրինակներ բերեց, թե ինչպես գործարանի տեխնիկական հագեցվածությունն ավելացնելու շնորհիվ մեծ չափերով ավելացել է արտադրանքի թողարկումը։ 1955 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, գործարանում արտադրանքի թողարկման աճը կազմեց 555 տոկոս, իսկ այս տարվա առաջին չորս ամիսներին, անցած 1955 թվականի համեմատությամբ, համախառն արտադրանքի թողարկումն աճել է 280 տոկոսով, ապրանքային արտադրությանը՝ 280 տոկոսով։

—Մեր գործարանը,— շարունակում է ագիտատորը,— 6-րդ հնգամյակի վերջում անճանաչելի կդառնա։ Կընդարձակվեն համարյա բոլոր ցեխերը, շահագործման կհանձնվեն արտադրական նոր հրապարակներ, կտեղադրվեն նոր ավտոմատ և կիսաավտոմատ մեքենաներ։ Արդեն տեղադրվել են 5 խառատային, 2 «Պիտլեր» տիպի ավտոմատ, 2 կիսավտոմատ և այլ հաստոցներ։ 1960 թվականին մեր գործարանի արտադրական կարողությունը, 1956 թվա-



կանի համեմատությամբ, կաճի ավելի քան երկու անգամ։

Ագիտկոլեկտիվի աշխատանքում դգալի տեղ է գրավում նաև ցուցադրական ագիտացիան։ Գործարանի շենքի մուտքի մոտ, միջանցքներում, ցեխերում, բանվորական ակումբում և մյուս աչքի ընկնող տեղերում փակցված են բազմաթիվ լոզունգներ, կոչեր, պլակատներ, ինչպես նաև ցիտատներ Վ. Ի. Լենինից և ՍՄԿՊ XX համագումարի որոշումներից։ Օրինակ՝ հավաքող ցեխում փակցված է «Աշխատանքի արտադրողականությունը դա վերջին հաշվով ամենակարևորն է, ամենագլխավորը՝ նոր հասարակարգի հաղթանակի համար», «Ես գիտեմ ինչ բան է աշխատանքը, դա բոլոր ուրախությունների աղբյուրն է, ամենալավ բանն է աշխարհում» (Մ. Գորկի), «Հիշիր և կատարիր սոցմրցմամբ ստանձած պարտավորությունները», «Ընկեր նորարար, իմացիր, որ քո առաջարկությամբ նպաստում ես աշխատանքի արտադրողականության բարձրացմանը» և այլն։

Ցուցադրական ագիտացիայի կազմակերպման գործում այստեղ ուսանելին այն է, որ կոնկրետ օրինակներով այն կապվում է գործարանի արտադրության հետ։ Պար-

տիական կազմակերպության հանձնարարությամբ մի խումբ ագիտատորներ հաշվումներ են կատարել արտադրանքի ինքնարժեքի իջեցումից, նյութերի խնայողությունից, աշխատանքի արտադրողականության բարձրացումից ստացված օգուտների մասին և գեղեցիկ պլակատներով այն փակցրել են բոլոր ցեխերում։ Օրինակ՝ «Ընկեր հիշիր, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը 1 տոկոսով հայրենիքին կտա տարեկան ավելի քան 132 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք», «Պայքարեցեք ինքնարժեքի իջեցման համար» և այլն։

Ագիտատորների օգնությամբ ցեխերում սիստեմատիկ կերպով ամփոփվում են սոցիալիստական մրցության արդյունքները և «Ցուցանիշների տախտակ»-ում գրի առնըվում, թե յուրաքանչյուր բանվոր ինչպես է կատարում իր ստանձած պարտավորությունը։ Մրցության շատ առաջավորներ խրախուսվում են՝ «Պատվո-տախտակ»-ի, պատի թերթի միջոցով։

Ցուցադրական ագիտացիայի մեջ զգալի տեղ է գրավում նորարարների փորձի մասսայականացումը։ Գործարանի միջանցքում փակցված են «Նորարարների ցուցափեղկը»



և «Նորարարական առաջարկների տախտակ»-ը։ Նորարարների ցուցափեղկում ցուցադրվում են նորարարների ռացիոնալիզատորական առաջարկությունները՝ «Նորարարական առաջարկների ժողովածու» ամսագիրը, իսկ «Նորարարական առաջարկների տախտակի» վրա փակցվում է գործարանի բանվոր-նորարարների լուսանկարները, նրանց առաջարկների գծագրերը, առաջարկության բովանդակությունը և թվեր դրանցից ստացված օգուտների մասին։ Թեև գործարանի կոլեկտիվը երիտասարդ կոլեկտիվ է, սակայն նորարարների թիվը արդեն անցնում է 50-ից։

Արտադրության մեջ ներդրված են տասնյակ նորարարական առաջարկություններ որոնք գործարանին մի քանի հարյուր հազար ռուբլու եկամուտ են տվել։ Իրենց նորարարական առաջարկություններով գործարանում հատկապես աչքի են ընկնում խառատ Հ. Մալխասյանը, վարպետ Ժ. Սիմոնյանը, ինժեներ Մանուկյանը և ուրիշները։ Վերջերս վարպետ Ժ. Սիմոնյանի և ինժեներ Մանուկյանի առաջարկությամբ փոփոխություն մտցվեց հիդրավլիկ մամլիչ հաստոցի կառուցվածքի մեջ։ Այս առաջարկության կի-

րառումով հիդրավլիկ մամլիչի արտադրական կարողությունը բարձրացավ 50—60 տոկոսով։ Ժամանակին տեղյակ լինելով նորարարների արժեքավոր այդ առաջարկությունների մասին, ագիտատորները ագիտկոլեկտիվի հերթական նիստում ուսումնասիրեցին այն և իրենց հերթական զրույցների ընթացքում մանրամասնորեն մասսայականացրին խառատ Մալխասյանի, վարպետ Սիմոնյանի և ինժեներ Մանուկյանի նորարարական առաջարկությունը։

Վերջերս գործարանում նորարարական առաջարկություններ տալու միամսյակ էր հայտարարված։ Բոլոր ցեխերում, միջանցքներում և աչքի ընկնող տեղերում փակցված էին և այժմ էլ փակցված են բազմաթիվ լոզունգներ, որոնք կոչ են անում բանվորներին՝ տալ նորարարական առաջարկներ։ Այս միամսյակի կազմակերպման և հաջող անցկացման գործում ակտիվ մասնակցություն են ցույց տալիս գործարանի ագիտատորները։ Նրանք ցեխերում անց են կացնում զրույցներ գործարանի նորարարների մասին, օգնում՝ ցեխերում լույս ընծայելու «կայծակ» թերթիկներ, որոնցում լուսաբանում են բանվորների կողմից արված նորարարական առաջարկությունները։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԻՆԳ ՏԱՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նախորդ՝ հինգերորդ հնգամյակում վիթխարի հաջողություններ են ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, ժողովրդի նյութական բարեկեցության աճման և կուլտուրայի բնագավառներում։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

★ 1955 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրության ծավալը, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 90 տոկոսով։

★ Երևանում և ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում ու ավաններում կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 40 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։

★ Հինգերորդ հնգամյակում ավարտվեց ՍՍՌՄ-ում խոշոր հիդրոէլեկտրակայաններից մեկի՝ Գյումու-

շի հիդրոէլեկտրակայանի կառուցումը։ 1955 թվականին 2,3 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվել, քան 1950 թվականին։

★ 1950 թվականի համեմատությամբ 1955 թվականին ավելի է արտադրված. մետաղահատ հաստոցներ՝ 3,1 անգամ, 100 կիլովատից բարձր կարողությամբ գեներատորներ՝ 10,7 անգամ, կենտրոնախույս պոմպեր՝ 5,4 անգամ, կոմպրեսորներ՝ 4,2 անգամ և այլն։

★ Զգալիորեն ավելացել է թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքը. 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելի է թողարկված. բրդե գործվածքներ՝ 4,5 անգամ, մետաքսե գործվածքներ՝ 3,3 անգամ, գուլպեղեն՝ 67 տոկոսով, բամբակե գործվածքներ՝ 65 տոկոսով, կոշկեղեն՝ 45 տոկոսով, շաքարավազ՝ 94 տոկոսով, պահածոներ՝ 83 տոկոսով և այլն։

★ 1950 թվականի համեմատությամբ, 1955 թվականին ժամացույցների արտադրությունն ավելացել է 6,3 անգամ, ալյումինե ամանեղենինը՝ 2,8 անգամ, մեր արդյունաբերությունը բնակչության կարիքների համար սկսել է արտադրել սեղանի գեղեցիկ և հարմար էլեկտրալամպեր և էլեկտրաարդուկներ։

★ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան (1953 թ.), Փետրվար-մարտյան (1954 թ.) և Հունվարյան (1955 թ.) պլենումներից հետո աչքի ընկնող հաջողությունների է հասել նաև ռեսպուբլիկայի գյու-



ղատնտեսությունը։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, հիմնականում նույն ցանքատարածություններում բանջարեղենի համախառն բերքը ավելացել է 78 տոկոսով, կարտոֆիլինը՝ 16 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 51 տոկոսով, ծխախոտինը՝ 54 տոկոսով։

★ Կոլտնտեսություններում և սովխոզներում 1955 թվականին խաղողի համախառն բերքը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 29 տոկոսով, պտուղներինը՝ 26 տոկոսով։ Մեկ հեկտարից խաղողի միջին բերքատվությունը ավելացել է 11 տոկոսով, պտուղներինը՝ 28 տոկոսով։

★ Զգալիորեն ավելացել է անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը. մսինն ու ճարպինը՝ 76 տոկոսով, կաթինը՝ 64 տոկոսով, ձվինը՝ 2,7 անգամ, բրդինը՝ 59 տոկոսով։ Մեկ կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում բարձրացել է 88 տոկոսով ,իսկ մեկ ոչխարի միջին բրդատվությունը՝ 29 տոկոսով։

★ Պետությանը հանձնած ու վաճառած արտադրանքի դիմաց կոլտնտեսությունները 1955 թվականին 144 միլիոն ռուբլով ավելի շատ դրամ են ստացել, քան 1950 թվականին, և 133 միլիոն ռուբլով ավելի, քան 1952 թվականին։

★ Հաջողությամբ առաջ է գնում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման գործը։ Մինչև 1950 թվականի հունվարի 1-ը էլեկտրիֆիկաց-

վեցին բոլոր մեքենա-տրակտորային կայանները, սովխոզների 85 և կոլտնտեսությունների 79 տոկոսը։

★ 1955 թվականին ռեսպուբլիկայում աշխատում էին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 4,4 հազար գյուղատնտեսական մասնագետ։

★ Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը հնգամյակի ընթացքում աճեց 54 տոկոսով։ Այդ տարիներին էլեկտրիֆիկացվեց Սանահին—Լենինական երկաթուղագիծը։

★ 1951—1955 թվականներին բացվեցին ավտոմոբիլային հաղորդակցության հետևյալ ուղեգծերը՝ Երևան—Թբիլիսի, Երևան—Կիրովաբադ, Երևան—Կիսլովոդսկ, Երևան—Գորիս, Երևան—Մխչյան։ Կանոնավոր ավտոբուսային կապ է հաստատվել բոլոր շրջանային կենտրոնների և խոշոր բնակավայրերի հետ։

★ Տրոլեյբուսային գծերի երկարությունը ավելացել է 85 տոկոսով։

★ Ռադիոընդունիչ կետերի քանակը աճեց 2,4 անգամ, այդ թվում գյուղում՝ 2,5 անգամ։

★ Հինգերորդ հնգամյակի ընթացքում բանվորների և ծառայողների թիվն աճեց 24 տոկոսով, բանվորների և ծառայողների տարեկան միջին թիվը 1955 թվականին կազմեց 292 հազար մարդ։

★ Պետական միջոցներով կառուցվել է ավելի քան 600 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածու-



թյամբ բնակելի տներ։ Քաղաքային բնակչությունը իր հաշվին և պետական վարկի օգնությամբ հնգամյակի ընթացքում կառուցեց 475 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Կոլտնտեսականները և գյուղի ինտելիգենցիան կառուցեցին մոտ 26 հազար բնակելի տուն։

★ Մահճակալների թիվը հիվանդանոցներում աճեց 45 տոկոսով, մանկամսուրների տեղերի թիվը՝ 18 տոկոսով։

★ Սանատորիաների և հանգստյան տների տեղերի թիվն աճեց 18 տոկոսով։

☆ Ռեսպուբլիկայում բժիշկների թիվն աճեց 30 տոկոսով։

★ Ռեսպուբլիկայի մայրաքաղաքում և ռեսպուբլիկական ենթակայության քաղաքներում հնգամյակի վերջերին ավարտվեց անցումը յոթնամյա կրթությունից ընդհանուր միջնակարգ (տասնամյա) կրթության։

★ 1955 թվականին բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էին 19,4 հազար ուսանող կամ 29 տոկոսով ավելի, քան 1950 թվականին։

★ Բոլոր բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները արտադրությունից կտրված ուսուցման կարգով տվեցին 22,6 հազար շրջանավարտ, որը 47 տոկոսով ավելի է նախորդ հնգամյակի համեմատությամբ։

★ Գիտաշխատողների ընդհանուր թիվը ներ-

առյալ գիտա-մանկավարժական կադրերը, մինչև 1955 թվականի հոկտեմբերի 1-ը կազմեց 2.516 մարդ և 1950 թվականի համեմատությամբ աճեց 26 տոկոսով։

★ 1955 թվականին մասսայական գրադարանների թիվը հասավ 1.662 միավորի, ըստ որում գրքերի քանակը կազմեց ավելի քան 5 միլիոն օրինակ։ 1955 թվականին ռեսպուբլիկայում հրատարակված գրքերի տիրաժը կազմեց ավելի քան 7 միլիոն օրինակ և 1950 թվականի համեմատությամբ ավելացավ 50 տոկոսով, ամսագրերի տիրաժն ավելացավ 184 տոկոսով, թերթերի տարեկան տիրաժը՝ 38 տոկոսով։

---

# ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Տրանսպորտը, ինչպես և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, վեցերորդ հնգամյակում կհասնի հետագա զարգացման և կհարստանա առաջնակարգ տեխնիկայով։ ՍՄԿԿ 20-րդ համագումարի Դիրեկտիվներում նշված է. տրանսպորտի ասպարեզում վեցերորդ հնգամյա պլանի կարևորագույն խնդիրները համարել երկաթուղային, ջրային, ավտոմոբիլային և օդային տրանսպորտի տեխնիկական մակարդակի հետագա վերելքը, երկաթուղիների լայն էլեկտրիֆիկացումը և տրանսպորտի բոլոր տեսակների հագեցումը ժամանակակից, առավել պրոգրեսիվ լոկոմոտիվներով և շարժական կազմի այլ տեսակներով:

★ ՍՍՌՄ երկաթուղիները փոխադրումների ծավալով ներկայումս դուրս են եկել աշխարհում առաջին տեղը։ 1955 թվականին նրանց բեռնաշրջանառությունը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացավ 61 տոկոսով, այսինքն՝ 21 տոկոսով ավելի,

քան նախատեսված էր հինգերորդ հնգամյա պլանով։
վեցերորդ հնգամյակում բեռնաշրջանառությունը ա-
վելացվելու է ավելի քան 400 միլիարդ տոննա-կի-
լոմետրով և հասցվելու է 1374 միլիարդ տոննա-կի-
լոմետրի 42 տոկոսով ավելի, քան 1955 թվակա-
նին։ Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանա-
ռության հենց միայն այդ հնգամյակում հավասար
կլինի բոլոր երկաթուղիների 1940 թվականի ամբողջ
բեռնաշրջանառությանը։ Համեմատության համար
հիշեցնենք, որ նախառևոլյուցիոն Ռուսաստանում եր-
կաթուղային փոխադրումների տարեկան ծավալը
կազմում էր հազիվ 77 միլիարդ տոննա-կիլոմետր։
★ Երկաթուղիների քարշունակությունը բարձրաց-
նելու համար վեցերորդ հնգամյակում աշխատանք է
տարվելու քարշի տեխնիկական վերակառուցման ուղ-
ղությամբ, լայնորեն արմատավորելով էլեկտրաքարշեր
և ջերմաքարշեր։

☆ Էլեկտրաքարշը մեծ առավելություններ ունի շո-
գեքարշի համեմատությամբ։ Շոգեքարշը սակավ
խնայողաբեր է, նրա օգտակար գործողության գոր-
ծակիցը հավասար է 4—5 տոկոսի, մինչդեռ էլեկ-
տրաքարշինը հավասար է 16—18 տոկոսի։ Էլեկտրա-
քարշերի օգտագործման դեպքում 1,5—2,5 անգամ
կավելանա գծամասի քարշունակությունը և 3—4 ան-
գամ կկրճատվի վառելիքի ծախսումը։ Այսպես, օրի-
նակ՝ Մոսկվա—Վլադիվոստոկ երկաթուղում շոգե-
քարշերի փոխարեն էլեկտրաքարշեր օգտագործելու



դեպքում տարեկան կտնտեսվի առնվազն 18 միլիոն
տոննա ածուխ և շահագործման ծախսերը կկրճատ-
վեն ավելի, քան 2,7 միլիարդ ռուբլով։ Այդ գծա-
մասի էլեկտրիֆիկացման ծախսերը կծածկվեն չոր-
տարում։

★ Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն որո-
շում է ընդունել «Երկաթուղիների էլեկտրիֆիկացման
գլխավոր պլանի մասին»։ 15 տարում էլեկտրիֆիկաց-
վելու է 40.000 կիլոմետր երկաթուղի։ Վեցերորդ
հնգամյակում իրագործվելու է երկաթուղային
տրանսպորտի տեխնիկական վերազինման այդ ծրա-
գրի առաջին էտապը։

★ Նախատեսվում է գործարկել 8.100 կիլոմետր
էլեկտրիֆիկացված երկաթուղի կամ 3,6 անգամ ավելի,
քան հինգերորդ հնգամյակում։ Էլեկտրաքարշի հետ-
ևից գնացքները կգնան Մոսկվա-Կույբիշև—Չելյա-
բինսկ—Օմսկ—Նովոսիբիրսկ—Իրկուտսկ մագիստրա-
լով, որը աշխարհի էլեկտրիֆիկացված ամենաերկար
ուղեմասն է և ունի մոտ հինգ հազար կիլոմետր երկա-
րություն։

★ Երկաթուղիների էլեկտրիֆիկացման հետ մեկտեղ՝
վեցերորդ հնգամյակում լայն մասշտաբներով ներ-
դրվելու են ջերմաքարշեր։ Նախատեսված է ջերմա-
քարշերով աշխատող երկաթուղիների երկարությունը
ավելացնել և 7 հազարից հասցնել 25 հազար կիլո-
մետրի։

★ Արտադրողականությունը հնգամյակի ընթացքում

երկաթուղային տրանսպորտին կտա առնվազն 2000 էլեկտրաքարշ, այդ թվում 5700 ձիու ուժանոց 400 ութառնանի էլեկտրաքարշ, ինչպես նաև 2250 մագիստրալային երկսեկցիոն ջերմաքարշ։ Վեցերորդ հնգամյակում նախագծվելու և պատրաստվելու են 2500—3000 ձիու ուժանոց մեկսեկցիանի բեռնատար ջերմաքարշերի, մարդատար ջերմաքարշերի և էլեկտրաքարշերի, ինչպես նաև գազատուրբաքարշերի փորձնական նմուշներ։

★ Քարշի տեխնիկական վերակառուցումը կապահովի, որ 1960 թվականին ամբողջ բեռնաշրջանառության 40—45 տոկոսը կատարվի էլեկտրաքարշերով և ջերմաքարշերով՝ 1955 թվականի 14 տոկոսի դիմաց, իսկ 1965 թվականի բեռնաշրջանառության մեջ էլեկտրական քարշի և ջերմաքարշերի բաժինը կկազմի արդեն 80—85 տոկոս։

★ Զգալիորեն ավելանալու է երկաթուղային տրանսպորտի վագոնային պարկը։ Վեցերորդ հնգամյակի վերջին տարում՝ 1960 թվականին մեկ և կես անգամ շատ վագոն է արտադրվելու, քան 1955 թվականին։ Հնգամյակի տարիներին տրանսպորտը կստանա 255 հազար ապրանքատար և 18.600 մարդատար վագոն։ Միայն այս հնգամյակում արտադրվող վագոններով երկու անգամ շատ բեռներ կփոխադրվի, քան փոխադրվում էր նախառևոլյուցիոն Ռուսաստանում ամբողջ շարժական կազմով։

★ Վեցերորդ հնգամյակում մեծ թափ է ընդունե-



լու երկաթուղային նոր գծերի կառուցումը։ Կառուցվելու է մոտավորապես 6500 կիլոմետր նոր երկաթուղի, կամ 2,1 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում։ Բացի դրանից, նախատեսված է կառուցել 935 կիլոմետր նեղլիծ երկաթուղի խամ և խոպան հողերի յուրացման շրջաններում։

★ Նոր երկաթուղիների կառուցման հետ միասին նախատեսված է կառուցել երկրորդ գծեր մոտավորապես 6600 կիլոմետր ընդհանուր երկարությամբ, կամ 40 տոկոսով ավելի, քան հինգերորդ հնգամյակում։

★ Վեցերորդ հնգամյակում հետագա զարգացում կստանա երկաթուղային տրանսպորտի արտադրական պրոցեսների ավտոմատացումը։ Բեռնալարված երկաթուղիներում սարքավորվելու է ավտոբլոկավորում, դիսպետչերական կենտրոնացում և ավտոմատ արգելակներ մոտավորապես 15 հազար կիլոմետր երկարության վրա։ Դա հնարավորություն կտա զգալիորեն ավելացնել ուղեմասերի թողունակությունը և բարձրացնել գնացքների երթևեկության անվտանգությունը։ Այս հնգամյակում 18 հազար սլաք սարքավորվելու են էլեկտրական կենտրոնացումով։ Ուժեղացվելու է ռադիոկապը շարժվող գնացքների և մանևրող լոկոմոտիվների հետ։ Տեսակավորման կայաններում մտցվելու է հեռուստատեսություն։

★ Վեցերորդ հնգամյակում առավելագույն չափով մեքենայացվելու են երկաթուղային տրանս-

պորտի աշխատատար պրոցեսները՝ գծերի նորոգումն ու վերակառուցումը, բեռնման-բեռնաթափման աշխատանքները։ Այսպես, 1960 թվականին կայարանների բեռնահրապարակներում բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման մակարդակը հասցվելու է 75 տոկոսի։

★ Բարելավվում են երկաթուղային տրանսպորտի աշխատանքի որակական ցուցանիշները։ Նախատեսված է հնգամյակի ընթացքում բեռնատար վագոնի շրջանառության ժամանակը կրճատել—հասցնել 5,3 օրվա կամ 15 տոկոսով, էլեկտրաքարշի օրական միջին վազքը ավելացնել—հասցնել 550 կիլոմետրի կամ 44 տոկոսով, ջերմաքարշինը՝ 315 կիլոմետրի կամ 14 տոկոսով։ Բեռնատար գնացքի միջին քաշը կհասցվի 2200 տոննայի, որը 25 տոկոսով բարձր կլինի, քան 1955 թվականին։ Փոխադրումների ինքնարժեքը հնգամյակում իջնելու է մոտավորապես 17 տոկոսով։

★ Երկաթուղիների տեխնիկական զինվածության հետագա աճման, էլեկտրաքարշերի և ջերմաքարշերի տեսակարար կշռի ավելացման, ճանապարհային տնտեսության վերակառուցման, գնացքների առևտրական արագության և նրանց միջին քաշի ավելացման, ինչպես նաև աշխատանքի կազմակերպման գործի բարելավման միջոցով երկաթուղում աշխատանքի արտադրողականությունը հնգամյակում բարձրացվելու է մոտավորապես 34 տոկոսով։



☆ Հնգամյակի ընթացքում ավելի քան երկու անգամ ավելանալու է ծովային տրանսպորտի բեռնաշրջանառությունը։ Բեռների փոխադրումները հետագա զարգացում են ստանալու Հեռավոր արևելյան, Ազով-սևծովյան, Հյուսիսային և այլ ավազաններում։ Բարձրանալու է հայրենական տոննաժի տեսակարար կշիռը էքսպորտա-իմպորտային փոխադրումների մեջ։

★ Վեցերորդ հնգամյակում կառուցվելու է ատոմային էներգետիկ սարքավորում ունեցող հզոր սառցահատ։ Դա հնարավորություն կտա երկարացնել նավագնացության ժամանակը և ապահովել նավերի անխափան աշխատանքը սառցային ծանր պայմաններում։ Հնգամյակի ընթացքում ծովային նավատորմը կստանա բեռնատար նավեր՝ 1 միլիոն 600 հազար տոննա ընդհանուր բեռնատարողությամբ, կամ 1,8 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում, մարդատար նավեր՝ 198 հազար ձիու ուժի ընդհանուր կարողությամբ և բուքսիրային նավեր՝ 230 հազար ձիու ուժի կարողությամբ։

★ Բարձրանալու է ծովային նավահանգիստների տեխնիկական հագեցվածությունը և ավելանալու է նրանց թողունակությունը։ 1960 թվականին ծովային նավահանգիստներում բեռնման-բեռնաթափման աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման մակարդակը հասցվելու է 65 տոկոսի։

★ *Մեր երկրում 500 հազար կիլոմետրի է հասնում այն գետերի երկարությունը, որոնք պիտանի են նավարկության և լաստառաքման համար։ Գետային տրանսպորտի բեռնաշրջանառությունը վեցերորդ հնգամյակում ավելանալու է մոտավորապես 80 տոկոսով։ Ավելանալու են հացի, անտառանյութի, նավթի, ածխի և մասսայական այլ բեռների գետային փոխադրումները։ Նախատեսվում է նավագնացության համար յուրացնել հիդրոէլեկտրակայանների շինարարության հետևանքով ստեղծված ջրային խոր նոր ուղիներ Վոլգա, Կամա, Դնեպր և այլ գետերում։*

★ *Վեցերորդ հնգամյակում տրանսպորտը, էկոնոմիկայի բոլոր մյուս ճյուղերի հետ միասին, մեծ չափով զարգանալու է նաև մեր ռեսպուբլիկայում։ Բավական է ասել, որ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, բեռնաշրջանառությունը աճելու է 47 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 107,6 տոկոսով։ Երկաթուղիների օրական միջին բեռնումը 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կավելանա 50,2 տոկոսով, քիմիական և հանքային պարարտանյութերի բեռնումը՝ 3,3 տոկոսով, բամբակի բեռներինը՝ 66,6 տոկոսով և այլն։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՈԳԵՇՆՉՈՂՆ ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴՆ Է

Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ,* 1953։

ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը անձնի պաշտամունքը և նրա հետևանքները հաղթահարելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 3-ի համարում։*

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ոգեշնչողն ու առաջնորդն *է, «Պրավդա»-ի խմբագրական հոդվածը տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 11-ի համարում։*

## 2. ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Գրականություն

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Պետական կենսաթոշակների օրենքի նախագիծը, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն*

*Սովետի հինգերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 12-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ճինգերորդ սեսիայում դեպուտատների ելույթները և սեսիայի օրագրերը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 12-ի, 17-ի համարներում։*

3. ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ՀԱՄԱՐՁԱԿՈՐԵՆ ՆԵՐԴՆԵԼ *ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ*

Գրականություն

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX ճամագումարի Դիրեկտիվների մասին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ ճնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 75—79։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX ճամագումարի բանաձևը՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ճաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 62—67։*

Խոսում են ցուցաճանդեսի մասնակիցները, *նյութեր գյուղատնտեսության առաջավորների մասին, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 6-րդ համարում։*

4. *ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՈՒԺԵՂ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է*

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքային կարգապաճության



մասին, *Երկեր, հատոր 30, Հայպետհրատ, 1951, էջ 558—559։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱ. *(Հիմնական օրենք), հոդված 118—131։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ճաշվետու զեկուցումը Պարտիայի XX ճամագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 109—121։*

*5. ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵՆՔ ՆՈՐՈՐԴ ՃՆԳԱՄՅԱԿԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ*

Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX ճամագումարի բանաձևը՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ճաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

ՍՄԿՊ XX ճամագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ ճնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 6—38։*

Սարքավորումներն օգտագործել լրիվ կարողությամբ, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 26-ի առաջնորդողը։*

### 6. ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԻՆԳ ՏԱՐՈՒՄ

Գրականություն

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1951—1955 թվականների արդյունքների մասին հաղորդագրություն, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 10-ի համարում։*

Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 19-ի առաջնորդողը։*

### 7. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐ

Գրականություն

ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 67—79։*

Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ— Ճառ պարտիայի XX համագումարում, *Հայպետհրատ, 1956։*

Բնակչությանը տալ բարձրորակ լայն սպառման ապրանքներ, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 2-ի առաջնորդողը։*

Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ— Ռացիոնալ օգտագործենք արդյունաբերական ձեռնարկությունների հիմնական միջոցները, *տպագրված «Պարտիական կյանք» ամսագրի 1956 թվականի 5-րդ համարում։*



### 8. ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԱՎԱՐՏԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 81—103։*

Ավելի շատ անասնակեր կուտակելու համար, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 6-րդ համարում։*

Ա. ԴԱՎԹՅԱՆ— Լավագույն ժամկետներում կատարենք խոտհունձը և կերերի սիլոսացումը, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 13-րդ համարում։*

### 9. ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԸ ՀԱՎԱՔԵՆՔ ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԵՎ ԱՌԱՆՑ ԿՈՐՈՒՍՏԻ

Գրականություն

ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 42—51։*

Կոմբայնները ժամանակին պատրաստել բերքահավաքին, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 17-ի առաջնորդողը։*

Բերքահավաքի նախապատրաստության վիճակաև օրերը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 7-ի առաջնորդողը։*



Գյուղատնտեսական աշխատանքների նուլիս ամսվա օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 7-րդ համարում։*

### *10. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԵՐԿԱՐԱՏԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 6—57։*

Սովետա-կորեական համատեղ կոմյունիկե Սովետական կառավարության և Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի կառավարական դելեգացիայի բանակցությունների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 13-ի համարում։*

Սովետական կառավարության հայտարարությունը ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման ասպարեզում համաեվրոպական համագործակցության մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 14-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Դիմումը աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին զինաթափման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 17-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի հայտարարությունը ջեր-



մամիջուկային, այսինքն ատոմային և ջրածնային զենքն արգելելու և նրա փորձարկումները դադարեցնելու հարցի շուրջը Յապոնիայի պառլամենտի Դիմումի կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 17-ի համարում։*

Հայտարարություն Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարական դելեգացիաների բանակցությունների արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 18-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Պ. տ. խմբագիր՝ Վ. ՆԵՐԻՔԱՐՅԱՆ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 14 1956 г.

ՎՖ 04687 Պատվեր 591 Տիրաժ 8415

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպ.։